ցով: Բայց չի սպասուիր որ Իրլանտա անգլիական ծանուցագրին պատասխանէ մօտատենէն:

Անգլիոյ գաղթային նախարարը իր վերջին ճառին մէջ՝ հաշտարար լեզու մը գործածեր էր, ինչ որ լաւ տպաւորութիւն գործած է Իրլանտայի պաշտօնական շրջանակներուն վրայ եւ կը կարծուի թէ իրլանտական կառավարութեան պատասխանը պիտի խմբագրուի համապատասխան ոճով մը:

## Պուլկար նախարարներ Փարիզ կուգան

*Պուլկարիոյ ելմտական նախարարը Պ. Սթեֆանով՝ ընկերակցութեամբ Ազգային դրամատան տնօրէնին, Փարիզ կուգայ երկուշաբթի օր, բանակցելու համար Պուլկարիոյ նախապատերազմեան պարտքերու հարցին մասին: Նոյն նպատակով Լօզանէն Փարիզ պիտի գայ Պուլկարիոյ վարչապետը Պ. Մուշանով:*

Հ. Յ. Դ.

## Փարիզ եւ արուարձաններ

*ՓԱՐԻԶԻ կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Չորեքշաբթի իրիկուն, ժամը 8.30ին, Միւթիւալիթէի սրահին մէջ: Պարտադիր ներկայութիւն: Օրակարգի շարունակութիւն:*

*ԱՆԻԷՌ-Պուա Քոլոմպի կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Նաւզոր Փոթորիկ, Ազատամարտ եւ Մասիս խումբերը այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 9ին,* Café Ararat, 345 Ave. Argenteuil. *Կարեւոր օրակարգ:*

## Գաւառ

*ԼԻՈՆԻ Համազասպ խումբի արտակարգ ժողովի շարունակութիւնը 12 Յուլիս ԵՐԵՔՇԱԲԹԻ իրիկուն ժամը 8.30ին Դրադարանի սրահը: Պարտաւորիչ ներկայութիւն:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի տիկին Յակոբեան եւ տէր եւ տիկին Մինաս Յակոբեան իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ, նամակով եւ հեռագրով ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրեցեալ որդւոյն եւ եղբօր *ՅՈՎՀԱՆՆԷՍ ՅԱԿՈԲԵԱՆԻ* դառնաղէտ մահուան առթիւ:

*7 Յուլիս 1932, Տէսին*

## ԴԱՏՇԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած Դպրոցասէրի Սանուց Միութեան կողմէ

*31 Յուլիս Կիրակի ժամը 14էն 22, Վարժարանին պարտէզը*

**1 Bld. du Nord, Le Raincy**

Մարզական խաղեր, երաժշտութիւն եւ սիրուն անակնկալներ վարժարանին սանուհիներուն կողմէ

ջազպանտ՝ ծանօթ խումբ.— պար, ճոխ պիւֆէ:

## Շրջանաւարտներու վկայականներու բաշխում

փափաքողները կրնան առտուընէ գալ իրենց ճաշով միասին:

**ՄՈՒՏՔ 5 ՖՐԱՆՔ**

Հաղորդակցութեան միջոցներ.— *Առնել Օփերայէն կամ Ժան-Ժորէսէն 21A եւ կար տը լ'Էսթէն Կարկանի գիծը եւ իջնել Րէնսի-Փավիյօն: Շոգեկառքը՝ առաւօտեան ժամը 8.56, 10.15, 11.40, 12.06, կէսօրէ վերջ ժամը 2, 4 եւայլն:*

ԾԱՆՕԹ.— Անձրեւի դէմ ապաստարան:

## ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

*ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ*, կեանքը, Թ. Ազատեան 15 ֆրանք, *ԾԱՆՕԹ ԴԷՄՔԵՐ ՈՒ ՊԱՏՄՈՒԱԾՔՆԵՐ*, Գ. Զօհրապ 20, *ՆԱՀԱՏԱԿ ԳՐՈՂՆԵՐ* (Տ. Չէօկիւրեան եւ Ռ. Սեւակ), Ա. Սեւան 15, *ԱՐԵՒՈՏ ՃԱՄԲԱՆ*, Մաննիկ Պէրպէրեան 10, *ԵՏՔԸ*, էրիխ Մարիա Ռեմարք 20, *ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆԻ ՄՏՔԵՐԸ*, Քրիստ. Միքայէլեան 10, *ԽԵՆԹԸ եւ ՋԱԼԱԼԷՏԻՆ* Րաֆֆի 25, *ՎԱԼԱՆԹԻՆ*, Ժորժ Սան 20, *ԹԷՐՖԱՆՕ*, (Բիւզանդիոնի կայսրուհին) 25, *ԱՊՐՈՒՄՆԵՐ*, Մալխաս 50, *ԳՆԴԱԿԱՀԱՐՈՒԱԾՆԵՐԸ*, Ռէն 20, *ԵՐԵՔ ԸՆԿԵՐՆԵՐԸ*, Պ. Մելոյեան 10, *ՍԱԼԻՀԱ ՀԱՆԸՄ*, Ե. Օտեան 2 հատոր 30 ֆր., *ԺԻՒՏԷՔՍ ԵՒ ԺԱՔԼԻՆ*, Ա. Պէրնէտ 2 հատոր 65 ֆր., *ՍԻՄՈՆ ՓԷՀԼԻՎԱՆ* 25, *ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ԱՂՋԻԿԸ*, Քասիմ 2 հատոր 25, *ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԿՐԹՈՒԹԻՒՆ*, Յ. Ալոճեան (Ռոզմերի) 12.50, *ՏԱՒԻՂ ԵՒՈԼԵԱՆ*, Գ. Կառվարենց 20, *ԱՐԵՒԵԼՔԷՆ ԱՐԵՒՄՈՒՏՔ*, Ռոստանիկ 5, **QUATRE CONFÉRENCES SUR L'ARMÉNIE, Fr. Macler 35, LES RIRES D'UNE CHARMEUSE DE SERPENTS, Armen Ohanian 15.**

*Դիմել՝ ԳՐԱՏՈՒՆ ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ*, 51 rue Monsieur-le-Prince, Tél. Danton 88-65, *ուր կը գտնէք նաեւ ֆրանսերէն եւ հայերէն ամէն տեսակ գրքեր:*

## Արեւելեան նուագախումբ Լիոնի մէջ

**14 Juillet***ի ԱՌԹԻՒ* **59 Rue Dunoir**

## ՌՈՒԲԷՆ ՓԱՓԱԶԵԱՆԻ ՍՐՃԱՐԱՆԸ

*Ուր պիտի գտնէք ՊՈԼՍՈՅ ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ՕՂԻՆ՝ յարակից ազանդերով, Պոլսոյ հրապարակի վրայ ճանչցուած նշանաւոր ՌՈՏԻ ՓԱՐԹԻ ՕՂԼՈՒՆ, որուն պիտի ընկերակցի Փարիզէն յատկապէս հրաւիրուած (խանէնտէ) Պ. ԺԱՔ եւ Լիոնի յայտնի նուագողներ:*

*Այս բացառիկ պատեհութենէն օգտուեցէք՝ վերապրելու հայրենիքի կարօտով:*




Imp. A. DER (Agopian) 17, Rue Damesme, Paris (13)

*Le Gérant* *H. STEPHAN*


# ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ

# ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

## Նախագահութեամբ ՎՍԵՄ. ՏԻԳՐԱՆ ԽԱՆ ԲԷԼԷԿԵԱՆԻ

Ի ՆՊԱՍՏ ՓԱՐԻԶԻ ԵՒ ԱՐՈՒԱՐՁԱՆՆԵՐՈՒ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԴԱՍԸՆԹԱՑՔՆԵՐՈՒ

**Այսօր Կիրակի ժամը 2-8, Մուրատ-Ռափայէլեան վարժարանին պարտէզին մէջ**

*ՊԱՐԱՀԱՆԴԷՍ.— Կը նուագէ* «Sandrossian Orchestra*ի ճազը:*

*ՀԱՅԿԱԿԱՆ ԵՒ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ.— Բարձրախօս՝ գործիքներով, զետեղուած պարտէզին զանազան մասերուն մէջ, Բաւելի գործատէր Պ.* Մարտիկ Պասմաճեանի կողմէ, 66 rue Mouffetard, Paris.

ՊԻՏԻ ՆՈՒԱԳԷ ՓՈՔՐԻԿ ԴԱՇՆԱԿԱՀԱՐԸ **ՌԱՖՖԻԿ ՊԵՏՐՈՍԵԱՆ**

*ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ.— Հայ արուեստագէտներու խումբի մը եւ ֆրանսացի առաջնակարգ արուեստագէտներու կողմէ:*

*ՓԱՐԻԶԻ ՕՓԵՐԱՅԻ ՊԱԼԷԹԻ ԽՈՒՄԲԸ, ԸՆՏԱՆԵԿԱՆ ԶՈՒԱՐՃԱԼԻ ԽԱՂԵՐ, ԼՈՒՍԱՆԿԱՐՈՒՄ* (Phèbus). 23 Bld. Bonne Nouvelle, Paris

**Ճոխ պիւֆէ՝ մատչելի գիներով** **Մուտք 10 ֆրանք, տղոց համար՝ 5 ֆրանք**

*Ոչ ոքի տոմսակ չպիտի ղրկուի: Տոմսակները պիտի ծախուին դաշտահանդէսի մուտքին առջեւ:*

Անձրեւի պարագային հանդէսը տեղի կ'ունենայ վարժարանի Թատերասրահին մէջ

Հաղորդակցութեան միջոցներ.— Tram. *Թիւ 1, իջնել* Pont de Sèvres, *շոգեկառք Սէն Լազարէն եւ իջնել* Gare Sèvres.

*Կարգապահութեան կը հսկեն Հ. Մ. Ը. Մ.ի սկաուտները:*

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԴՐԱԽՏԻ ՍԱՐՍԱՓՆԵՐԷՆ

## Փախստականի պատմութիւնները

(Բ. եւ վերջին մաս)

Բայց Սիպերիան է այն վայրը, ուր մեծագոյն ոճիրները կը գործուին ի վնաս այն բոլոր մարդոց, որոնք մե՛ղք գործած են չընդունելով համայնավարութիւնը եւ մանկանոցներուն չեն յանձնած իրենց զաւակները կամ չեն թոյլատրած, որ իրենց կիներուն կամ քոյրերուն վրայ անասնական կիրքեր գոհացնեն կուսակցութեան հաստատոր «ընկերները»։ Օտեսայի կամ այլ մեծ քաղաքներու բանտերուն մէջ չմեռնողները անկասկած պիտի ոչնչանան Սիպերիոյ մէջ։

եւ ոչնչացնեն զանոնք, առանց ոեւէ մէկուն հաշիւ տալու, քանի որ կրցած են նենգամիտ եղանակով մը մեղադրել զանոնք, իբրեւ «պրոլետարական սեփականատիրութեան» եւ վարչաձեւին դէմ դաւողներ։

Խորհրդային կառավարութիւնը, իր ճնշումներով, բանտարկութիւններով եւ բոլոր իրեն հակառակ եղողներու բնաջնջումով, մինչ, գիւղացիներու մեծամասնութիւնը աճարեկելու եւ զանոնք՝ կոլխոզներու կամ համայնավար կուսակցութեան մէջ գրուիլ ստիպելու առարկայական նպատակը կը հետապնդէ. եւ այս առաջադրու-

[...]

մէկ Մինչ միւսները համայնավարութեան դէմ են։ Եւ իշխանութիւնները, ամէն ձեւ ու միջոց ի գործ կը դնեն, որպէսզի այդ «հակայեղափոխականները» — ինչպէս կը կոչեն — ամբաստանեն, ձերբակալեն եւ նետեն բանտերու պօտրումները, կամ ղրկեն Սիպերիա

[...] Սօրֆիթիսը սակայն ուզեց համոզել զանոնք, որ 800 օխայէն աւելի չի կրնար ըլլալ։ Այս առարկութեան անշուշտ ընթացք չտուին չեկիստները եւ ստիպեցին երկու գիւղացիները, որպէսզի ստորագրեն յանձնառագիր մը, որուն համաձայն, երկու գիւղացիները, այսքան ժամանակի մը ընթացքին պարտաւոր են շրջանային կազմակերպութեան կեդրոնի մթերանոցներուն յանձնել հազար օխա ծխախոտ։

# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԵՒԱՆ-ԶԱՆԳՈՒ ԽՆԴԻՐԸ ԵՒ ԻՐ ԹԱՆԳԱՐԱՆԸ

Երեւանէն կը գրեն Թիֆլիզի «Պրոլետար»ին 4 Յուլիս թուականով.—

Ընդունելով բացառիկ նշանակութիւնը Սեւան-Զանգու խնդրին ինչպէս գիտական-ճարտարարուեստական, նոյնպէս տնտեսական տեսակէտէն, Սեւանի կոմիտէին կից կազմուեցաւ թանգարան մը։

Այս թանգարանը պիտի նպաստէ Սեւան-Զանգուի շինարարութեան, լուսաբանելով այդ հարցին հետ կապուած բոլոր խնդիրները։ Նոյնատեն, թանգարանը պիտի նպաստէ ժողովրդականացնելու Սեւան-Զանգուի աշխատանքները։

Թանգարանը պիտի ունենայ բաժին.

1.— Բնապատմական, 2.— Տնտեսական եւ 3.— Մատենադարան։

## ԱՐՋՆԻԿԻ ԳՈՐԾԱՐԱՆ

Երեւանի մօտ, Քանաքեռի եւ Դիւմիւշի ջրաելեկտրակայաններուն կից, արջնիկի (alumine) գործարան մը հիմնելու համար Մոսկուայէն Հայաստան է հասած մասնաւոր յանձնախումբ մը։

Այս յանձնախումբին կարծիքն այն է թէ արջնիկի գործարանը կարելի է 1933ի վերջերը ապահովել ելեկտրական ուժով շնորհիւ Հայաստանի ջրաելեկտրակայաններուն, արտադրելու համար տարեկան 16 հազար տակառաչափ արջնիկ։

## ԵՐԵՒԱՆԻ ԲԱՆՈՒՈՐՆԵՐԸ ԵՒ ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԸ

«Պրոլետար» (6 Յուլիս) կը գրէ.—

Երեւանի մէջ տեղի ունեցաւ «հանդիսաւոր հանդիպում» մը, Երե-

[...]

## ԹՈՒՐՔ ԱՒԱԶԱԿԱԽՈՒՄԲ ՄԸ ՓՃԱՑՈՒԱԾ

[...] որու միջոցին աւազակներու մեծ մասը սպաննուեցաւ եւ մնացածներն ալ բռնուեցան։

### ԹՈՒՐՔ ԼԵԶՈՒԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԸ

Շուտով պիտի վերակազմուի Թուրք լեզուական յանձնաժողովը։ Կրթական գործավարութեան կողմէ այս մասին կը պատրաստուի օրինագիծ մը, որ Ազգ. Մեծ Ժողովին պիտի ներկայացուի յառաջիկայ նստաշրջանին։

[...]

# ՄԱՄՈՒԼ

## Հայ լեզուն

«Ցուսաբեր» վերի խորագրով խմբագրականի մը մէջ կը գրէ (յուլիս 9).

— «Հայր Արսէն Ղազիկեանի խնկելի յիշատակին։

Տասնըմէկ տարի առաջ Խ. Հայաստանը որդեգրեց Մանուկ Աբեղեանի «ուղղագրութիւն»ը։ Այս յանդուգն աքթով Երեւանը կը փոխէր ոչ միայն մեր լեզուի ուղղագրութիւնը, այլ եւ անոր այբուբենը, հանելէ խպա դուրս նետելով օ եւ է գիրերը։ Այս յեղաշրջումին հիմ կը ծառայէր ձեւական արդարացում ունեցող տրամաբանական կեղծ առաձ մը — «մի հնչիւնին մի գիր»։

Կարմիր Երեւանը տարուած էր խորհելու, թէ ինք Արարատեան Աշխարհին մէջ ոչ միայն նոր կարգեր կը հաստատէ, այլ եւ այդ հինաւուրց Աշխարհին նոր լեզու կը պարգեւէ։

Երեւանը խպա մոռցած էր, որ ինք գործ ունի ժողովուրդի մը հետ, որուն հոգեկան նրբին գանձը, անոր հէտ ու հիասքանչ բարբառը, կուզայ հնագոյն դարերէ՝ բիւր ու անտեսանելի թելերով ձուլուած ու չաղախուած ըլլալով Մեսրոպեան գիրերուն.

Կապը լեզուի ու գրի միջեւ անհաղորդ մնաց Երեւանին, որ կը խիզախէր անտեսել մեր մինչեւ իսկ ալեհեր գրականութիւնը՝ նոր «ուղղագրութեան» հաշակումով կարծելով հիմը դնել նաեւ նոր «գրականութեան»։

Տասնըմէկ տարի առաջ, Խորհուրդներու փոթորկոտ օրերուն, «լաւելք»ները խուլցած էին Երեւանի մէջ, ուլ այլ եւս ոչ ոք կ'ուզէր անձնատուր ըլլալ «դաղտնի ձայն»ին ցեղային այն պարզ ու վսեմ, բայց եւ հզօր ու հանդիսաւոր զանձին, որ Հայոց Լեզու կը կոչուի։

Աբեղեանական յանդգնութեանց լաւագոյն պատասխանը պիտի տար ինքը կեանքը, որ իր ուրոյն օրէնքներն ու տրամաբանութիւնը ունի։

Իր նոր «ուղղագրութեամբ» Երեւանը կը յուսար լեզուի ինքնատիպ կառուցուածքին մէջ խորարմատօրէն ծաւալած այս խութերը մէկէն չակել ու հարթել։

Սակայն անկասկած էր, որ նոր «ուղղագրութեամբ» ու նոր այբուբենով հին անհարթութիւնները «չակելով» հանդերձ՝ Երեւանը միաժամանակ նոր ու ինքնատիպ ցուցանքներ պիտի ստեղծէր, բացառաբար ի՛ր լեզուական նոր ու տարօրինակ «բարեփոխութեանց» շնորհիւ։

Եւ ահա, այս «նորօրակ սխալագրութիւն»ներէն խուսափելու համար, Երեւանի «Լուսժողկոմատ»ը կը խորհի... նոր յեղաշրջում մը եւս կատարել։

Դժուար չէ երեւակայել, թէ այս նոր «ուղղագրութեամբ» — եթէ երբեք գործադրութեան դրուի ան — ի՛նչ նոր ու զարհուրելի ապանդ պիտի սկսուի մեր լեզուի աւանդական հնչումներուն, բառակազմութեանց, բառապատկերներուն եւ «նորօրակ սխալագրութեանց» մէջ։

Ցեղային պերճ ու չքեղ գանձ մը՝ Հայոց Աշխարհին խորթ իշխանութիւն մը վայրագօրէն կը տրորէ, առանց անոր բուն տիրոջ՝ հայ ժողովուրդի նոյն իսկ կարծիքն առնելու։

Ու ցաւ է տեսնել, որ լուռ է ոչ միայն բանտուած Հայրենիքը, այլ լուռ է նաեւ ազատ Գաղթաշխարհը։»

## ՄԵՐ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ...

Լէնինականի Բանուոր Թերթը կը գրէ (2 յուլիս).

[...] եան ընկերութեան, մասնաւոր յանձնախումբ մը, որ մշակութային կապ պիտի հաստատէ արտասահմանի [...]

## ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԿԱՊ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ՀԵՏ

[...]

ԿԸ ԽՆԴՐՈՒԻ յօդուածագիրներէն եւ թղթակիցներէն իրենց գրութիւնները գրել թուղթին մէկ երեսին վրայ եւ մելանով։

ՊՐՆ. ԿԱՐԻԿԻ ԵՂԱՆԵԱՆ ԶԱՒ ՄԱ. ԹՈՒՐ, [...] ՅԱՌԱՋ։

---

"ՅԱՌԱՋ"Ի ԹԵՐԹՕՆԸ (143)

# ԵՐԴԻՔ ՀԱՅՐԵՆԻ

(Վէպ)

Դ. ՄԱՍ

X

[...]

Բարձրացաւ վեր։

Զինուորցուներու համար տրուած պայմանաժամին վերջին օրն էր։ Հոն էին բոլոր հոսանքներու ներկայացուցիչները, ծանօթ ազգայիններ, տէր Մեսրոպ հայրը, Բէջպագճեան։ Հոսանքներու խմբապետներէն կազմուած զինուորական մարմինը։ Կը խորհրդակցէին, եւ որոշումներ կ'առնէին։

[...]

Կ. ՄԵՀԵԱՆ

(Շարունակելի)

կու դեսպաններուն ալ տրուած է մասնաւոր առաքելութիւն մը բանակցութիւն վարելու անգլիական եւ ամերիկեան կառավարութեանց հետ պատերազմական պարտքերու վճարման հարցին մասին:

Ֆրանսական պաշտօնական շրջանակները կը պնդեն թէ որեւէ անհրաժեշտութիւն չկայ փոխելու Լոնտոնի եւ Ուաշինկթընի դեսպանները: Այսուհանդերձ ստոյգ է, որ կառավարութիւնը լրջօրէն կը զբաղի պարտքերու հատուցման խնդրով:

Ուաշինկթընէն հասած հեռագրի մը համաձայն, Ծերակուտական Կլաս, տեսակցութեան մը ընթացքին, բացէ ի բաց յայտարարեց թէ պէտք է վերաքննել պատերազմական պարտքերու խնդիրը: Եւ յիշեցուց թէ քանի մը շաբաթ առաջ, նման առաջարկ մը ներկայացուցած է Ծերակոյտին, պարտքերու վերաքննութիւնը նկատելով անհրաժեշտութիւն մը յանուն իր երկրին շահերուն:

— 3—4 տարի առաջ, երբ կը ճնշէինք կարգադրութեան եղանակ մը գտնելու հարցը Անգլիոյ հետ, ճառ մը խօսելով՝ բողոքեցի եւ ըսի թէ Շէյլոքի պէս կը շարժինք: Եթէ պատերազմին միւս ժողովուրդները իրենց արիւնը թափեցին, մենք ալ մեր դրամը սպառեցինք: Եթէ անոնք զոհ տուին 16 միլիոն հոգի, վիրաւոր կամ սպաննեալ, մենք ալ կորսնցուցինք 200,000 հոգի: Երբ իրենց միացանք, անոնք կը կռուէին երեք տարիէ ի վեր: Բայց մեր միջամտութենէն առաջ եւ վերջը, պատերազմը տեղի կ'ունենար յանուն քաղաքակրթութեան փրկութեան:

Ինչպէս ծանօթ է, Ծերակուտական Պորահ եւս կը պահանջէ վերաքննել պատերազմական պարտքերը, եւ ստացած է բազմաթիւ հեռագիրներ, որոնք համամտութիւն կը յայտնեն իրեն: Նոյնպէս շատ է թիւը ծերակուտականներու եւ երեսփոխաններու, ինչպէս նաեւ ժողովրդային ներկայացուցիչներու, որոնք, երէկ այս առաջարկին հակառակորդ, այսօր կը գտնուին Պորահի կողքին:



## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Պարի, Վ. Փ.— 78 լիբէթ:
Գլէնտէն Ֆէրան, Թոք.— 140:
Մարսէյլ, Գործ.— 928:
Փարիզ, Ա. Բ.— 40:
Լիոն, Տ. Տ.— 82:
Լիոն, Հ. Մ. Ը. Մ.— 30:
Լա Պօքա, Գարս.— 70:
Անիէռ, Է. Ճ.— 35:
Սէն Շամօն, Գ. Ա.— 140:
Լէ Լիլա, Հ. Ճ.— 35:




Imp. A. DER (Agopian)
7, Rue Damesme, Paris (13)
Le Gérant H. STEPHAN


## Դասախօսութիւն

6 Օգոստոս Շաբաթ օր ժամը 8.30ին Musée Social, 5 rue Las-Case սրահին մէջ (Մէթրօ Սոլֆէրինօ):

Իշխան ԴԱՒԻԹ ՎԱՉՆԱՁԷ պիտի խօսի ֆրանսերէն լեզուով «ԿՈՎԿԱՍԻ ՀԱՐՑԸ» նիւթին մասին: Դասախօսութենէն վերջ մտքերու փոխանակութիւն:

Մուտքը ազատ է



## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Հ. Օ. Միութեան Վալանսի մասնաճիւղին կողմէ եւ հովանաւորութեամբ իր Կեդր. Վարչութեան, 21 Օգոստոսին, Կիրակի օր: Կը խնդրուի նկատի ունենալ այս թուականը: